Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 12 ՀՈՒՆԻՍ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:





# 1959 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ

Վ. ՇԱՀՊԱՐՈՆՅԱՆ
Հայկական ՍՍՌ Վիճակագրական վարչության պետի տեղակալ

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման համաձայն 1959 թվականի հունվարին տեղի է ունենալու համամիութենական մարդահամար: Այս շատ կարևոր միջոցառումը ճշգրիտ տվյալներ կտա Սովետական Միության ազգաբնակչության քանակի, կազմի և նրա դասավորման վերաբերյալ՝ ըստ առանձին ռեսպուբլիկաների, մարզերի, շրջանների, քաղաքների և բնակավայրերի:

Ինչպես հայտնի է, ազգաբնակչությունը շարունակ գտնվում է շարժման և մշտական փոփոխման պրոցեսում: Մեր երկրում 24 ժամվա ընթացքում ծնվում են հազարվոր երեխաներ, բազմաթիվ մարդիկ ամուսնանում են և ապրելու համար փոխադրվում մի տեղից մի այլ տեղ: Այս բոլորը փոփոխություններ են մտցնում ազգաբնակչության







քանակի և նրա դասավորման մեջ՝ երկրի ամբողջ տերիտորիայում, նրա կազմի, այսինքն նրա ստորաբաժանման մեջ ըստ սեռի, հասակի և ընտանեկան դրության, ըստ ազգությունների և մայրենի լեզվի, ըստ զբաղմունքների և ժողովրդական տնտեսության ճյուղերի։

Նախապատերազմյան և ետպատերազմյան հնգամյակների ընթացքում սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության բուռն զարգացման հետևանքով արմատապես փոխվեց Սովետական Միության ազգաբնակչության բաժանումը ըստ զբաղմունքների։ Լուրջ տեղաշարժեր են տեղի ունեցել նաև նրա դասակարգային կազմում և կուլտուրական մակարդակի բարձրացման գործում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը առաջադրեց ժողովրդական տնտեսության հետագա զարգացման և սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման նոր, մեծագույն խնդիրներ։ Համագումարը միահամուռ կերպով ընդունեց 6-րդ հնգամյա պլանի դիրեկտիվները, որի գլխավոր խնդիրը կայանում է նրանում, որ ծանր արդյունաբերության աճման բազայի, տեխնիկական անընդհատ պրոգրեսի և աշխատանքի արտադրողակա-



նության բարձրացման հիման վրա, ապահովվի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացումը և դրա հիման վրա հասնել ժողովրդի տնտեսական վիճակի ու կուլտուրական մակարդակի զգալի բարելավման։

Առանց ազգաբնակչության և նրա կազմի ճիշտ տվյալների, անհնարին է ապահովել արտադրության զարգացման, աշխատավորության տնտեսական բարեկեցության և կուլտուրայի բարձրացման ճիշտ պլանավորումը։ Պլանի ամեն մի բաժին, անկախ նրանից, թե այն համամիութենական, ռեսպուբլիկական կամ շրջանային նշանակություն ունի, հիմնավորվում է ազգաբնակչության քանակի տվյալների հիման վրա։ Ներկայումս ազգաբնակչության ընդհանուր քանակի, ինչպես նաև նրա՝ ըստ տերիտորիայի, սեռական կազմի և հասակային խմբավորումների մասին տվյալները ստացվում են բնակչության բնական և մեխանիկական շարժման մասին ընթացիկ վիճակագրության, ընտրողների ցուցակների՝ ըստ սեռի և հասակի ամփոփման, քաղաքներում երեխաների հաշվառման, գյուղական բնակչության՝ գյուղսովետների կողմից ամեն տարվա վերջին անցկացվող հաշվառման հիման վրա։ Այդ իսկ պատճառով դրանց հիման

վրա կատարվող հաշվարկումները լինում են մոտավոր ճշտությամբ։ Ճիշտ տվյալներ կարելի է ստանալ միայն մարդահամարի ժամանակ։

Համամիութենական մարդահամարի կարևոր նշանակությունը կայանում է նրանում, որ նա կտա ճշգրիտ տվյալներ Սովետական Միության ազգաբնակչության քանակի ու կազմի մասին, նրա դասավորումը ըստ ռեսպուբլիկաների, մարզերի և շրջանների, որոնք շատ անհրաժեշտ են ժողովրդական տնտեսության ճիշտ պլանավորման համար։

Ցարական Ռուսաստանում առաջին մարդահամարը անց է կացվել 1897 թվականին։

Սովետական Միությունում Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ առաջին մարդահամարը կատարվել է 1920 թվականին։ Համամիութենական երկրորդ մարդահամարը կատարվել է 1926 թվականին, որի տվյալներում հստակ կերպով արտացոլվեցին երիտասարդ սովետական պետության հաջողությունները, ժողովրդական տնտեսության և ազգաբնակչության նյութական դրության բավականաչափ բարելավումը։ Մարդահամարի նյութերը օգտագործվել են սոցիալիզմի շինարարության առաջին հնգամյա պլանը կազմելու համար։ Համամիութենական երրորդ մարդահամարը (չհաշված 1937 թվա-



կանի անհաջող մարդահամարը) կատարվել է 1939 թվականի հունվարին։

1926 և 1939 թվականների մարդահամարների միջև ընկած 12 տարվա ժամանակամիջոցում մեր երկրի դեմքը արմատապես փոխվել էր։ Տնտեսապես թույլ զարգացած և տեխնիկապես հետամնաց մեր Հայրենիքը դարձել էր զարգացած արդյունաբերության և առաջավոր գյուղատնտեսության երկիր իր բարձր կուլտուրայով և բազմաքանակ կադրերով։ Այդ բոլոր փոփոխությունները վառ կերպով արտացոլվել են 1939 թվականի մարդահամարի նյութերում։

1959 թվականի համամիութենական 4-րդ մարդահամարը կատարվում է ուղիղ 20 տարուց հետո և նրա արդյունքները կունենան շատ կարևոր նշանակություն։ Մարդահամարի նախապատրաստումն ու անցկացումը հանձնարարված է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրոնական վիճակագրական վարչությանը և նրա տեղական օրգաններին։

Գալիք մարդահամարի աշխատանքները բարձր որակով անցկացնելու համար անհրաժեշտ է նախապատրաստական մեծ աշխատանք կատարել։ Մարդահամարի ժամանակ բնակավայրերի, թաղամասերի, տնատիրությունների և առանձին բնակիչ-

ների բաց թողումներ թույլ չտալու համար, անհրաժեշտ է խնամքով կազմակերպել մարդահամարային շրջանցումը, ձեռքի տակ ունենալ քաղաքային վայրերի և մեծ գյուղերի ճշտված հատակագծերը, բոլոր փողոցները պետք է լինեն անվանակոչված կամ համարակալված և ամեն մի տնատիրություն պետք է ունենա իր առանձին համարը: Պետք է կազմել բոլոր շրջանների գյուղսովետների ճշտված քարտեզներ, որտեղ պետք է ցույց տրված լինեն բոլոր բնակավայրերը, ներառյալ առանձին երկաթուղային և ճանապարհային տնակները, անտառային պահակատները և այլն: Վիճակագրական վարչության օրգանները արդեն կազմել են բոլոր քաղաքներում, քաղաքատիպ վայրերում և մի շարք խոշոր գյուղերում տնատիրությունների և գյուղական բնակավայրերի ցուցակները ու գյուղսովետների քարտեզները:

Հետագայում, այդ նյութերի հիման վրա բոլոր բնակավայրերը պետք է բաժանվեն մարդահամարային բաժինների, հրահանգչական և հաշվային տեղամասերի: 1959 թվականի հունվարին հատուկ հաշվարարները կշրջագայեն իրենց հանձնարարված տեղամասերը և կցուցակագրեն քաղաքացիներին, տալով ամեն մեկին 15 հարց՝ հիմնականում հետևյալ հարցերը՝ առնչությունը ընտանիքի գլխավորի հետ (կին, ամուսին, տղա և այլն), սեռը, քանի տարին է լրացել, ներկայումս ամուսնացած է թե ոչ, ազգությունը, մայրենի լեզուն, որ պետության քաղաքացի է, կրթությունը, աշխատանքի վայրը, զբաղմունքը աշխատանքի այդ վայրում (պաշտոնը, կամ կատարած աշխատանքը), հասարակական ինչ խմբի է պատկանում (բանվոր, ծառայող, կոլտնտեսական և այլն):



Մարդահամարի աշխատանքների նախապատրաստման ու անցկացման գործում մեծ անելիքներ ունեն նաև մեր ագիտատորները: Նրանք ազգաբնակչության մեջ բացատրական լայն աշխատանք պետք է կատարեն և օգնեն տեղական հաշվառման օրգաններին, որպեսզի ոչ մի սովետական քաղաքացի դուրս չմնա մարդահամարի հաշվառումից:

Առաջիկա մարդահամարը ցույց կտա վերջին 20 տարվա ընթացքում մեզ մոտ տեղի ունեցած ազգաբնակչության խոշոր տեղաշարժերը և այն կծառայի մեր երկրում սոցիալիստական շինարարության բուռն վերելքին:

---

# ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ

*Սովետական Միությունը ներկայումս քիմիական արտադրանքի արտադրության ծավալով աշխարհում բռնում է երկրորդ տեղը։ Սակայն արտադրության գոյություն ունեցող մակարդակը և քիմիական արդյունաբերության զարգացման տեմպերը, հատկապես սինթետիկ նյութերի և նրանցից պատրաստվող իրերի արտադրությունը, դեռևս չի բավարարում ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջները։*

*Ելնելով ժողովրդական տնտեսության կենսական կարիքներից և անհրաժեշտ հումքային ու էներգետիկ ռեսուրսների առկայությունից, ՍՄԿԿ Կենտկոմի Մայիսյան պլենումը որոշում ընդունեց քիմիական արդյունաբերության և, հատկապես, սինթետիկ նյութերի ու նրանցից պատրաստվող իրերի արտադրության զարգացումն արագացնելու մասին։*



*Այդ որոշման մեջ նշված խնդիրների իրականացումը կապահովի մեր երկրի էկոնոմիկայի հզոր վերելքը և կարևոր դեր կխաղա ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի՝ կարճ ժամանակամիջոցում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու խնդրի լուծման գործում։*

*Գյուղատնտեսական հումքի հետ միասին սինթետիկ նյութերի լայն օգտագործումը հնարավորություն կստեղծի մոտակա 5—6 տարում զգալի չափով բավարարել բնակչության աճող պահանջները ժողովրդական սպառման առարկաների նկատմամբ։*

*ՍՄԿԿ Կենտկոմի Մայիսյան պլենումի ընդունած միջոցառումները 1965 թվականին կարողությունների աճ են նախատեսում 1957 թվականի համեմատությամբ հետևյալ չափով. արհեստական և սինթետիկ մանրաթելի արտադրության գծով՝ 4,6 անգամ, պլաստմասսաների և սինթետիկ ձյութերի գծով՝ 8 անգամ, սինթետիկ կաուչուկի գծով՝ 3,4 անգամ։*

*Սինթետիկ նյութերի մասսայական արտադրությունը հնարավորություն կտա 1957 թվականի համեմատությամբ 1965 թվականին ավելացնելու քիմիական արդյունաբե-*

րության արտադրանքի թողարկումը՝ հետևյալ չափերով. արհեստական և սինթետիկ թելերով խառն բրդյա կտորեղենը՝ 2,3 անգամ, մետաքսյա կտորեղենը՝ 1,75 անգամ, բամբակյա կտորեղենը՝ 6 անգամ, արհեստական և սինթետիկ թելերից պատրաստված արտահագուստի և սպիտակեղենի տրիկոտաժը՝ ավելի քան 9 անգամ, գուլպեղենը՝ 3,2 անգամ, արհեստական կարակուլը՝ 14 անգամ, արհեստական կաշվից պատրաստված կոշկեղենը՝ 2—3 անգամ, իսկ մանրածակոտկեն թեթև ներբանով կոշկեղենը՝ 40 անգամ։

Այս խնդիրների լուծման գործում որոշակի դեր պետք է խաղա նաև մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը։

Մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանում քիմիական ոչ մի ձեռնարկություն չկար։ Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության ստեղծման սկիզբը՝ 30-ական թվականներն են, երբ Սևանա լճի հիդրո-ռեսուրսների օգտագործման բազայի վրա դրվեց ռեսպուբլիկայի էներգետիկ տնտեսության հիմքը։

Ներկայումս Հայկական ՍՍՌ-ում կա զարգացած քիմիական արդյունաբերություն, որը ներկայացված է հետևյալ ձեռնարկություններով՝ Կիրովականի Ալ. Մյասնիկյանի



անվան Քիմիական կոմբինատ, Կիրովի անվան գործարան, Ավտոդողերի գործարան, Պոլիվինիլացետատ գործարան, Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատ, Լաքերի և ներկերի գործարան, Ռետինա-տեխնիկական իրերի գործարան, Խրոմպիկի գործարան։

Այս ձեռնարկությունները ժողովրդական տնտեսության համար թողարկում են այնպիսի բազմազան և կարևոր արտադրանք, ինչպես սինթետիկ կաուչուկը, կաուստիկ սոդան, կարբիդի կալցիումը, սինթետիկ ամիակը, հանքային պարարտանյութերը, քացախաթթուն, աղաթթուն, ազոտային թթուն և ծծմբաթթուն, վինիլացետատը և նրանից ստացվող մյուս նյութերը, ավտոդողերը, ռետինատեխնիկական իրերը, ներկերի շատ տեսակներ և այլն։ Քիմիական արդյունաբերության արտադրանքի մի շարք տեսակներով Հայկական ՍՍՌ-ն համեմատաբար նշանակալի տեսակարար կշիռ ունի ընդհանուր միութենական արտադրության մեջ. դրանցով նա բավարարում է ոչ միայն իր ժողովրդական տնտեսության կարիքները, այլև ուղարկում է մյուս ռեսպուբլիկաները։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի մեջ քիմիական արդյունաբերության բաժինը 1957

թվականին թողարկված ընդհանուր ծավալի մեջ կազմեց զգալի տոկոս։

Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի աճը, 1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին կազմեց 12,8 տոկոս, իսկ ընթացիկ տարվա համար 1957 թվականի համեմատությամբ, նախատեսված է 17,7 տոկոսի աճ։ Ընդ որում անհրաժեշտ է նշել, որ ի նկատի ունենալով այն, որ ռեսպուբլիկայի քիմիական արտադրության զգալի մասի համար որպես ելակետային հումք է ծառայում կարբիդի կալցիումը, որի արտադրությունը էլեկտրաէներգիայի մեծ ծախսում է պահանջում, վերջին տարիներում քիմիական արդյունաբերության հետագա աճը որոշ չափով արգելակված էր էներգաբալանսի լարվածության հետևանքով։ Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության զարգացման մեջ եղած մյուս թերությունն այն էր, որ մի շարք քիմիական արտադրությունների արտադրական ցիկլը ավարտվում էր ապրանքային կիսաարտադրանքների թողարկումով. առանց վերջնական արտադրանքի և իրերի ստացման։

ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի ընդունած որոշումը նախատեսում է Հայկա-



կան ՍՍՌ քիմիական արդյունաբերության աճ 1956—1965 թ. թ. ընթացքում մոտավորապես 4 անգամ։ Ընդ որում քիմիական արտադրանքի թողարկման ծավալի աճը տեղի կունենա ինչպես գոյություն ունեցող ճյուղերի հետագա զարգացման հաշվին, այնպես էլ քիմիական արտադրությունների նոր տեսակների ամենաբազմազան կոմպլեքսի կազմակերպման միջոցով։

Սինթետիկ կաուչուկի արտադրության կրկնակի ավելացման կապակցությամբ զգալիորեն կավելանա այնպիսի օժանդակ արտադրանքի թողարկումը ինչպիսիք են՝ կաուստիկ սոդան, աղաթթուն, քլորբենզոլը։ Կազմակերպվելու է պոլիքլորվինիլային ձյութերի բոլորովին նոր արտադրություն։ Այդ ձյութերի վերամշակումից կստացվի կենցաղային և տնտեսական ապրանքների բազմազան ասորտիմենտ։

Առավել խնայողական եղանակի կիրառման հաշվին զգալի չափով ավելանալու է քացախաթթվի արտադրությունը, որի մի մասը օգտագործվելու է վինիլացետատի թողարկումն ավելացնելու համար, իսկ մյուս մասը՝ որպես հումք՝ ացետիլ-ցելյուլոզի նոր կազմակերպվող արտադրության համար։

Վինիլացետատը հումք է ծառայում բարձրորակ սոսինձներ, լաքեր, օրգանական պլյոն-

կաներ և մի շարք այլ սինթետիկ նյութեր ստանալու համար։ Ստեղծվում է վինիֆլեքսի արտադրություն, որը էմալալաքերի և մեկուսիչ նյութերի պատրաստման համար հումք է։ Մեր էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը այդպիսի նյութերի սուր կարիք է զգում։ Վինիֆլեքսի կիրառումը հնարավորություն կտա յուրաքանչյուր տարի տնտեսելու տասնյակ միլիոնավոր ռուբլիներ՝ էլեկտրաշարժիչների արտադրության համար ծախսվող մետաղը 1,5—2 անգամ կրճատելու և մեծ քանակությամբ մետաքս, մանվածք և բուսական յուղեր խնայելու հաշվին, որոնք ներկայումս կիրառվում են մեկուսիչ նյութեր պատրաստելու համար։

Ացետիլցելյուլոզը օգտագործվում է ացետատային մետաքս, պլաստմասսաներ, բարձր լարման հոսանքների համար մեկուսիչ նյութեր, կինոժապավեններ, թափանցիկ ապակիներ և այլ նյութեր ստանալու համար։ Սկզբնական ժամանակաշրջանում ացետիլցելյուլոզը կօգտագործվի որպես հումք՝ Կիրովականում կառուցվող գործարանում ացետատային մետաքս պատրաստելու համար, որն ավելի դիմացկուն է, քան սովորական մետաքսը, աչքի է ընկնում իր գեղեցկությամբ և լայն կիրառում ունի տեքստիլ արդյունաբերության մեջ։



Ացետատային մետաքսը օգտագործվելու է բրդյա և մետաքսյա կտորեղենի, տրիկոտաժի և գուլպեղենի արտադրության նշանակալի ավելացման համար։

Քիմիական արդյունաբերության զարգացման պլանով նախատեսված է քիմիական արտադրության նոր ճյուղի՝ սինթետիկ կորունդի և մելամինի արտադրության կազմակերպում։

Կորունդն օգտագործվում է ժամացույցի և ճշգրիտ տեխնիկական քարեր, բարձրորակ առանցքակալներ և հատուկ օպտիկական սարքեր, ինչպես նաև զանազան թանկարժեք քարեր պատրաստելու համար։

Մելամինը ելակետային հումք է՝ էլեկտրամեկուսիչ նյութեր, բարձրորակ սոսինձներ և լաքեր, ինչպես նաև պլաստմասսաներ պատրաստելու համար։

Պլանով նախատեսված է կառուցել կապրոնային կորդի գործարան։ Այդպիսի կորդի օգտագործումը ավտոդողերի արտադրության մեջ հնարավորություն կտա նշանակալի չափով երկարացնելու ավտոդողերի օգտագործման տևողությունը և կկրճատի այդ նպատակով օգտագործվող կորդի ու կաուչուկի ծախսումը։

Հեռանկարային պլանում նախատեսված է յուրացնել կապրոլակտամի արտադրու-

թյունը, որը հումքով կապահովի կապրոնային կորդի ֆաբրիկան և հնարավորություն կստեղծի թեթև արդյունաբերության համար կապրոնի արտադրություն կազմակերպելու։

Ահա քիմիական արտադրանքի մի քանի տեսակների ոչ լրիվ ցանկը, որոնց արտադրությունը պետք է կազմակերպվի մեր ռեսպուբլիկայում առաջիկա 7 տարվա ընթացքում։

Քիմիայի զարգացումը գործունեության այնպիսի լայն ասպարեզ է բացում, որ, անկասկած, մեր գիտնականների և քիմիական արդյունաբերության աշխատողների ստեղծագործական համագործակցությունը հնարավորություն կստեղծի հայտնաբերելու և յուրացնելու մի ամբողջ շարք նոր, ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ քիմիական առարկաների և նյութերի թողարկումը։ Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության հետագա զարգացման համար մեծ նշանակություն կունենա բնական գազի առաջիկա ստացումը Ադրբեջանական ՍՍՌ-ից։

Վերևում արդեն խոսվեց այն մասին, որ վերջին տարիներս ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության աճը դանդաղում էր կարբիդի և ացետիլենի պատճառով, ո-



րոնց արտադրությունը կապված է էլեկտրաէներգիայի մեծ ծախսումների հետ։

Կարբիդային եղանակի փոխարեն բնական գազից ացետիլեն ստանալուն անցնելը խոշոր քանակությամբ էլեկտրաէներգիա կազատի (4.800 կիլովատ-ժամ մեկ տոննա ացետիլենի ստացման վրա՝ 11.000 կիլովատ-ժամի փոխարեն ացետիլենի կարբիդային եղանակով ստանալու դեպքում) և ացետիլենի ինքնարժեքը կիջեցնի ավելի քան 2 անգամ, համապատասխանորեն իջեցնելով նրա հիման վրա արտադրվող մյուս նյութերի ինքնարժեքը։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության էներգետիկ բազայի ընդլայնման և քիմիական արդյունաբերության զարգացման արագ տեմպերի ապահովման գործում բացառիկ դեր կխաղա ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից վերջերս ընդունված որոշումը «Հայկական ՍՍՌ էներգետիկ տնտեսության հետագա զարգացման մասին»։

Այդ որոշմամբ նախատեսված միջոցառումների իրագործումը էլեկտրաէներգիայի արտադրության հետագա ավելացման հետ միասին թույլ կտա պահպանելու Սևանի ջրերի հնարավորին չափ բարձր մակարդակը։

Քիմիական արտադրանքի արտադրության





մեծ կոմպլեքսի ստեղծման և եղածի ընդլայնման ուղղությամբ միջոցառումների ընդարձակ ծրագրի կենսագործումն ապահովելու համար նախատեսված է շեշտակիորեն ավելացնել քիմիական արդյունաբերության համար հատկացված կապիտալ ներդրումների ծավալը:

Բավական է ասել, որ 1959—1965 թ. թ. համար նախատեսված կապիտալ ներդրումների ծավալը ավելի քան 5,5 անգամ կգերազանցի նախորդ յոթնամյակում քիմիական արդյունաբերության մեջ ներդրված միջոցների ծավալը:

ՀԿՊ Կենտկոմի վերջերս կայացած պլենումը, ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումից, քննության առավ «Բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստվող առարկաների արտադրության զարգացումը արագացնելու մասին» հարցը և ծավալուն որոշում ընդունեց: Պլենումի կողմից նշված միջոցառումների կենսագործումը արմատապես կփոխի մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկան և այն կբարձրացնի մի նոր աստիճանի:

---

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԶՐՈՒՅՑ ԱՆԱՍՆԱՊԱՀԱԿԱՆ ՖԵՐՄԱՅՈՒՄ

Արթիկի շրջանի Նոր Կյանք գյուղի կոլտնտեսության անասնապահները ֆերմայի կարմիր անկյունում հավաքվել էին զրույցի: Նրանց զրույցի թեման էր անցած հինգ ամսվա ընթացքում կաթի արտադրության ուղղությամբ ձեռք բերած արդյունքները: Անասնապահները կարծիքներ էին փոխանակում առաջիկա գործերի մասին, քննադատաբար վերլուծում կատարված աշխատանքը: Խոսելով կոլտնտեսության անասնաբուծության վիճակի մասին ֆերմայի ագիտատոր, կոլտնտեսության զոոտեխնիկ Արշալույս Կիրակոսյանն ասաց.

— Ինչպես գիտեք, պարտիան մեր առջև խնդիր է դրել՝ բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի, յուղի արտադրությամբ մոտակա տարիներին հասնել և անցնել ԱՄՆ-ից: Դա համաժողովրդական պայքար է,

որին պետք է ակտիվորեն մասնակցի անասնաբուծության ամեն մի աշխատող։

Պարտիայի շրջանային կոմիտեի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը, որը երկրորդ տարին է, ինչ գտնվում է մեր ձեռքում, ինքնին վկայում է այն մասին, որ կաթի արտադրության ավելացման գործում մեր ֆերման շրջանում նվաճել է մրցության առաջնությունը։ Բայց եկեք մի հայացք նետենք ոչ հեռու անցյալի վրա։ Ի՞նչ էր վիճակը։ Մի տեսակ թերահավատ վերաբերմունք էր ստեղծվել անասնաբուծության նկատմամբ, շատերը խուսափում էին այս ճյուղում աշխատելուց։ Եվ դա ուներ իր պատճառը։ Մարդիկ ամբողջ տարին աշխատում, քրտինք էին թափում, բայց որոշակի արդյունքի չէին հասնում։ Պակաս էր անասնակերը, իսկ կովերը՝ գաճաճ ու ցածր կաթնատու։ Դրան պետք է ավելացնել նաև այն, որ մենք չունեինք տիպային անասնաշենքեր, բացակայում էր անձնական շահագրգռվածությունը, զոոանասնաբուծական կանոնները չէին կիրառվում։ Այդպիսի պայմաններում, բնական է, որ հնարավոր չէր աշխատանքը կազմակերպել ուզածիդ պես, կամ խոսել բարձր ցուցանիշներ ձեռք բերելու մասին։



Գյուղատնտեսության, մասնավորապես անասնաբուծության եկամտաբերությունը բարձրացնելու վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումներից հետո կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը մշակեցին և իրագործում են մի շարք միջոցառումներ, որոնք հետզհետե փոխեցին գոյություն ունեցող վիճակը։

Ապա նայեցեք ձեր շրջապատը։ Համարյա մեր բոլոր գոմերը կառուցվել են 1952 թվականից հետո։ Դա հնարավորություն է տվել հանրային հոտը խարխուլ, հարմարություններից զուրկ շենքերից փոխադրել նորակառույց գոմերը, որտեղ կան բոլոր պայմանները կերը խնայողաբար օգտագործելու անասուններին լավ խնամելու և աշխատատար պրոցեսները մեքենայացնելու համար։

— Կաթի արտադրության ավելացմանը, սակայն, միայն գոմերի կառուցումը չէ, որ նպաստել է։ Դրա համար մենք մեծ չափով պարտական ենք և եգիպտացորենի մշակության արմատավորմանը,— տեղից ասում է անասնապահներից մեկը։

— Ճիշտ է,— հաստատում է ագիտատորը,— այդ կուլտուրան առատորեն վարձա-

տրեց իր մշակողներին։ Իրոք, եգիպտացորենը մեծ չափերով ավելացնում է կովերի կաթնատվությունը։ Վերցնենք թեկուզ սեփական փորձը։ Մենք սովորաբար սիլոս էինք պատրաստում մոլախոտերից և շատ դեպքերում էլ խոտի համար պիտանի մասսայից։ Դրանով և՛ մեզ էինք խաբում և՛ անասուններին։ Այլ է պատկերն այսօր։ Միայն անցյալ տարի ամեն մի կովի համար պատրաստեցինք ավելի քան 5,5 տոննա սիլոս, որն օգտագործվում է մինչև օրս, իսկ արդյունքը հրաշալի է։ Կերի բազան ամրապնդելու գործում խոշոր դեր խաղացին նաև ցանովի խոտաբույսերի և կերի արմատապտուղների ցանքատարածությունների ընդարձակումը, խոտհարքների մշակության բարելավումն ու դրանց պաշտպանության ուժեղացումը։ Երբեք մենք այնքան կեր չէինք կուտակել, որքան անցյալ տարի։ Կուտակվեց 426 տոննա խոտ, 727 տոննա սիլոս, 1.100 ցենտներ խտացրած կեր և արմատապտուղներ, ինչպես նաև 1.012 տոննա հարդ։

Այդ պաշարը ամբողջ մսուրային շրջանում ֆերմային լիուլի բավարարեց, իսկ խոտի դեզերի մի մասը դեռ մնում է։ Կար ժամանակ, երբ մենք պետությունից օգնու-



թյուն էինք խնդրում, զգալի միջոցներ ծախսում խոտ, քուսպ և այլ կերեր ձեռք բերելու համար։

Առատ կերը առատ մթերքի աղբյուր է։ Անասուններին բազմապիսի կերերով լավ սնելը հրաշալի արդյունք տվեց։ Անցած 5 ամսում ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը կազմեց մոտ 1.000 կիլոգրամ, որը զգալիորեն ավելի է 1954 թ. ամբողջ տարում ստացվածի համեմատությամբ։ Պատահական չէ, որ դեռ մարտ ամսին կատարելով կաթի մթերման և գնման տարեկան պլանը, զգալի քանակությամբ լրացուցիչ կաթ վաճառեցինք պետությանը։

— Ինչ էլ լինի,— միջամտում է կթվորուհի Արուսյակ Խարիցյանը, դեռ մենք շատ բան ունենք շահումյանցիներին հասնելու համար։

— Դեռ սպասիր,— ավելացնում է մեկ ուրիշը, կգա ժամանակ, երբ ռեսպուբլիկայում կխոսեն նաև մեր մասին։

— Դրանում ես չեմ կասկածում,— հույս է հայտնում ագիտատորը,— կան բոլոր երաշխիքները ավելի շատ կաթ ստանալու համար։ Բայց բարձր կաթնատու կովերը իրենք իրենց չեն ստեղծվում։ Դուք տեսնում եք, թե մեզ մոտ ինչպիսի աշխատանք է կա-

տարվում անուսունների ցեղի բարելավման ուղղությամբ։ Այժմ մեր կովերի զգալի մասը խառնածին է, որը սերված լինելով Ստեփանավանի տոհմային անասնաբուծական սովխոզի «շվից» ցեղի ցուլերից, տեղական կովերի համեմատությամբ մի քանի անգամ ավելի շատ կաթ է տալիս։ Ցեղական հատկանիշները ավելի լավ են ի հայտ եկել 1957 թվականի և այս տարվա սերնդի մոտ։ Սակայն սպասվող արդյունքը չի ստացվի, եթե մենք առանձնահատուկ խնամք չտանենք մեր վաղվա կովերի նկատմամբ։

Մենք այժմ 100 հեկտար հողատարածության դիմաց ունենք 14,5 կով, որը կարելի է հասցնել մինչև 18-ի։ Բայց միայն գլխաքանակի մասին չպետք է մտածել։ Պետք է մտածել նաև այն մասին, որպեսզի մեր բոլոր կովերը լինեն բարձր կաթնատու։

Այժմ մեզ մոտ փոխվել է մարդկանց վերաբերմունքը անասնաբուծության նկատմամբ։ Դրա շնորհիվ անասնաբուծությունը դարձել է մեր ամենաեկամտաբեր ճյուղը։ Անցյալ տարի արտելի դրամական եկամուտների 65 տոկոսից ավելին բաժին ընկավ անասնաբուծությանը։ Ներկայումս ֆերման ունի բանիմաց ու բարեխիղճ կադրեր, որոնք կուտակել են աշխատանքային հարուստ



փորձ։ Նրանցից՝ կթվորուհիներ Օ. Տոնոյանը, Հ. Թադևոսյանը, Ա. Խարիցյանը, Է. Ասատրյանը արդեն մեծ չափով գերակատարել են կաթի արտադրության ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանները և անկորուստ աճեցրել ստացված մատղաշը։

Աշխօրերի դիմաց տարեկան մի քանի անգամ ավանսավորումը, լրացուցիչ վարձատրության նորմաների վերանայումը, անասնապահներին արտահագուստով ապահովելը, կթի հաշվառման նկատմամբ խիստ հսկողության սահմանումը մեծ չափով բարձրացրին անձնական շահագրգռվածությունը և անձնական պատասխանատվությունը։ Վերցնենք հետևյալ օրինակը։ Անցյալ տարի, հաշվի առնելով առաջավոր անասնապահների ձեռք բերած ցուցանիշները, նախատեսվեց ավելի առատ լրացուցիչ վարձատրություն՝ համեմատաբար բարձր եկամուտ տալու դեպքում։ Դա անասնապահների մոտ առեղծեց շահագրգռվածություն և ընդհանուր վերելք։ Նրանց ճնշող մեծամասնությունը կարողացավ ոչ միայն կատարել առաջադրված պլանը, այլև գերազանցեց սահմանված ցուցանիշները։ Հավելյալ կարգով նրանց տրվեց 12,532 կիլոգրամ կաթ, 15

հորթ, 18 գառ ու խոճկոր և մի քանի հազար ռուբլի դրամ:

Ագիտատորն այնուհետև խոսում է ֆերման յայլաղ բարձրացնելու հետ կապված նախապատրաստության մասին, ունկնդիրներին տեղյակ է պահում այնտեղ կատարված աշխատանքներին, մի քանի անասնապահների կշտամբում կթի ռեժիմը խախտելու համար: Պրակտիկան ցույց է տվել, որ անասունը ռեժիմին այնպես է վարժվում, որ կիթը ուշացնելու դեպքում նա ոչ միայն անհանգստանում է, այլև համեմատաբար քիչ կաթ է տալիս: Այդ կարծիքն են հայտնում նաև շատ կթվորուհիներ, որոնք միշտ անասուններն կերակրում, խնամում, կթում և զբոսանքի են դուրս բերում օրվա միևնույն ժամերին՝ համաձայն զոոտեխնիկի կողմից կազմված ռեժիմի:

— Իհարկե,— եզրափակում է ագիտատորը,— մենք չպետք է բավարարվենք ձեռք բերած ցուցանիշներով: Հարկավոր է գործը այնպես կազմակերպել, որպեսզի ֆերման դարձնենք Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու:

Կ. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ

---

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԿՈՈՊԵՐԱՑՈՒՄԸ ԵՎՐՈՊԱՅԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

*ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ* հիմնականում ավարտել է գյուղատն-
տեսության արտադրական կոոպերացումը:
Ներկայումս երկրում կա ավելի քան 3200
աշխատանքային կոոպերատիվ հողագոր-
ծական տնտեսություն (ՏԿՀԽ): Նրանք միա-
վորում են մոտ մեկ միլիոն գյուղացիական
ծխեր, կամ երկրի բոլոր գյուղացիական
տնտեսությունների 90 տոկոսից ավելին:
Պետական հողագործական տնտեսություն-
ների հետ միասին ՏԿՀԽ-ները մշակում են
Բուլղարիայի բոլոր վարելահողերի ավելի
քան 95 տոկոսը: *Կոոպերատիվ տնտեսություններից դուրս է մնացել միայն երկրի լեռնային և կիսալեռնային շրջանների գյուղացիական տնտեսությունների աննշան մասը:*

★ *Կոոպերատիվ կարգը գյուղում անսահմանափակ հնարավորություններ է բացել*

գյուղատնտեսության արտադրական ուժերի զարգացման համար։ 1957 թվականին ըդգալիորեն բարձրացել է հիմնական գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Այսպես՝ ցորենի միջին բերքատվությունը երկրում կազմել է դեկարից 171,4 կիլոգրամ (1 դեկարը հավասար է 0,1 հեկտարի), որը մոտ 70 տոկոսով գերազանցում է բուրժուա-կալվածատիրական Բուլղարիայի միջին բերքատվությունը։ Ավելի քան երեք անգամ բարձրացել է յուրաքանչյուր կովի կաթնատվությունը։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության ավելացման շնորհիվ անցյալ տարի բուլղարական գյուղատնտեսության արտադրանքն ավելացավ մոտավորապես 16 տոկոսով։

★ Հանրային արտադրության աճման հիման վրա սիստեմատիկորեն աճում են բուլղարական կոոպերատիվ տնտեսությունների և կոոպերատոր-գյուղացիների եկամուտները։ 1957 թվականին աշխօրի միջին վարձատրությունը երկրում մոտ երկու անգամ ավելի էր, քան 1954 թվականին։

★ Բուլղարիայի սոցիալիստական գյուղատնտեսության մեջ լայնորեն արմատավորվում է ժամանակակից գյուղատնտեսական



տեխնիկան։ Աշխատանքային կոոպերատիվ
հողագործական տնտեսություններին սպա-
սարկում են 200 մեքենա-տրակտորային կա-
յաններ։ Կոոպերատիվների դաշտերում աշ-
խատում են 27.000 տրակտոր (15-ուժանոցի
հաշվով), ավելի քան 4.300 հացահատիկա-
յին կոմբայն, մոտ 4.800 կալսիչ, 12.000
տրակտորային շարքացան և հազարավոր այլ
ժամանակակից գյուղատնտեսական մեքե-
նաներ։

★ Բուլղարական գյուղը տարեցտարի ա-
վելի շատ որակյալ կադրեր է ստանում։ 1944
թվականից մինչև 1957 թվականը երկրի ինս-
տիտուտները, դպրոցներն ու ուսումնարան-
ները գյուղատնտեսության համար պատրաս-
տել են մոտ 7000 գյուղատնտեսներ, զոո-
տեխնիկներ, անասնաբուժներ, անտառային
տնտեսության մասնագետներ, 24 հազար
մեխանիզատորներ և այլ պրոֆեսիայի աշ-
խատողներ։

ՉԵԽՈՍԼՈՎԱԿՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ հաս-
տատ քայլերով ընթանում է դեպի գյուղա-
տնտեսության կոոպերացման ավարտում։
1957 թվականին երկրում հիմնվել է 3249
միասնական գյուղատնտեսական կոոպերա-
տիվ (ՄԳԿ)։ Նոր կազմակերպված, ինչպես
նաև առաջներում գոյություն ունեցող կոո-

պերատիվներին են մտել ավելի քան 263 հազար գյուղացիներ։

Այս տարվա մարտին արտադրական կոոպերացումն ընդգրկել էր չեխոսլովակյան բոլոր գյուղերի մոտ 80 տոկոսը։ Ռեսպուբլիկայում ամբողջությամբ վերցրած հաշվվում էր 11.350 միասնական գյուղատնտեսական կոոպերատիվ։ Նրանք մշակում էին երկրի գյուղատնտեսական ցանքատարածության ավելի քան երկու երրորդը։

*Չեխոսլովակիայի արտադրական կոոպերատիվների համար բնորոշ է հիմնական գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման համեմատաբար բարձր մակարդակը։ Երկիրն ունի մեքենա-տրակտորային կայանների խիտ ցանց, որի միջոցով կատարվում է ԵՍԿԽ-ների բոլոր դաշտային աշխատանքների մոտ 90 տոկոսը։ Առ 1957 թվականը ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը պետությունից ստացել է ավելի քան 40 հազար տրակտոր, 4 հազարից ավելի կոմբայն, 29 հազար շարքացան, 7 հազար կարտոֆիլացան մեքենա, 17 հազար խրձկապ և տասնյակ հազարավոր այլ գյուղատնտեսական մեքենաներ։*

★ *Արտադրական կոոպերատիվները բարձ-*



*րացնում են իրենց արտադրությունն ու եկամուտները։ Անցյալ տարի ԵՍԿԽ-ները մենատնտեսների համեմատությամբ յուրաքանչյուր հեկտարից ավելի բարձր բերք են ստացել՝ ցորեն և գարի՝ 2,6 ցենտներով, տարեկան՝ 1,1 ցենտներով, եգիպտացորեն՝ 3 ցենտներով, շաքարի ճակնդեղ՝ 23 ցենտներով։*

*Կոոպերատիվի անդամ գյուղացիների եկամուտները 1957 թվականին միջին հաշվով ավելացան 10,4 տոկոսով։*

★ *Առաջադրելով երկրում սոցիալիզմի շինարարության ավարտման խնդիր, Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիան նշել է նաև գյուղատնտեսության կոոպերացման և վերելքի ծրագիրը։ «Մեր գյուղում սոցիալիզմի շինարարության համար մղվող պայքարը,— մատնանշվում է ՉԿՊ Կենտկոմի՝ «Պարտիայի գյուղական կազմակերպությունների աշխատանքի մասին» վերջերս ընդունված որոշման մեջ,— պահանջում է գյուղում ստեղծել նոր ԵՍԿԽ-ներ, ամրապնդել ու ընդլայնել գոյություն ունեցող կոոպերատիվները, գյուղատնտեսության մեջ սոցիալիստական սեկտորը դարձնել տիրապետող»։*

ԱԼԲԱՆԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ։ 1957 թվականը Ալբանիայի գյուղացիության մեջ կոոպերատիվ շարժման բուռն տարի հանդիսացավ։ Մեկ տարվա ընթացքում արտադրական կոոպերատիվների քանակը երկրում կրկնապատկվեց։ 1958 թվականի սկզբներին ռեսպուբլիկայում կար 1.700 գյուղատնտեսական կոոպերատիվ։ Նրանք միավորում էին երկրի բոլոր գյուղացիական ծխերի 46 տոկոսը և մշակում բոլոր ցանքատարածությունների ավելի քան 58 տոկոսը։ Այս տարվա մայիսին կոոպերատիվների թիվը հասավ 1900-ի, իսկ նրանց կողմից մշակվող ցանքատարածությունը՝ ռեսպուբլիկայի ցանքատարածության 70 տոկոսին։

Հենվելով գյուղի սոցիալիստական վերափոխման բնագավառում եղած հաջողությունների վրա, Ալբանիայի Աշխատանքի պարտիան խնդիր է դրել՝ երկրի բոլոր հարթավայրային շրջաններում այս տարի ավարտել գյուղատնտեսության կոոպերացումը։

★ Անցյալ տարի ռեսպուբլիկայում յուրացված է ավելի քան 22 հազար հեկտար նոր հողեր, զգալիորեն ընդլայնվել է ոռոգելի հողերի տարածությունը։ Մեկ տարվա



ընթացքում պարենային հացահատիկային կուլտուրաների համախառն բերքն աճել է 26 տոկոսով, բամբակինը՝ 78 տոկոսով, ծխախոտինը՝ 26 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 55 տոկոսով։ Աճել է տնկարկների, այգիների, խոզերի և թռչունների գլխաքանակը։ Գյուղատնտեսական արտադրանքի արտադրության այդքան նշանակալի ավելացման գործում կարևոր դեր են խաղացել երիտասարդ արտադրական կոոպերատիվները։

★ Գյուղատնտեսության մեջ սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատումը զուգահեռ է ընթանում նյութա-տեխնիկական բազայի ստեղծման հետ, որը համապատասխանում է այդ հարաբերություններին։ Գյուղատնտեսական ետամնաց գործիքներին և ձեռքի աշխատանքին փոխարինելու համար ալբանական գյուղ են մտնում մեքենաները։ Ռեսպուբլիկայում ստեղծված է 22 ՄՏԿ, որոնք հագեցված են առաջավոր գյուղատնտեսական տեխնիկայով։ Այս տարի երկրի դաշտերում կաշխատեն 2.100 տրակտոր (15-ուժանոցի հաշվով), 110 կոմբայն և շատ այլ գյուղատնտեսական մեքենաներ։

*ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ։ Վերջին երկու տարվա ընթացքում գյուղատնտեսական կոոպերատիվ տնտեսությունները, արտադրական կոոպերատիվներն ու գյուղատնտեսական ընկերություններն են մտել 1 միլիոն 141 հազար գյուղացիական ընտանիքներ՝ երեք անգամ ավելի, քան նախորդ վեց տարվա ընթացքում։*

Մինչև այս տարվա մարտի 1-ը երկրում հաշվվում էր 14.312 գյուղատնտեսական կոլեկտիվ տնտեսություն, արտադրական կոոպերատիվ և գյուղատնտեսական ընկերություն։ Դրանք ընդգրկում էին ավելի քան 1 միլիոն 528 հազար գյուղացիական ընտանիքներ, որոնք մշակում էին ավելի քան 3 միլիոն 830 հազար հեկտար հող։ Այսպիսով, կոոպերատիվ-սոցիալիստական սեկտորում աշխատում էր ռումինական ամբողջ աշխատավոր գյուղացիության 45 տոկոսը, և նա զբաղեցնում էր երկրի գյուղատնտեսական ցանքատարածությունների 37 տոկոսը։

★ *Ռումինական բանվորական պարտիան խնդիր է դրել՝ ապահովել գյուղատնտեսության սոցիալիստական սեկտորի հետագա աճը և ամրապնդումը, որպեսզի 1960 թվականին նրան պատկանի ռեսպուբլիկայի*



*գյուղատնտեսական ցանքատարածությունների մեծ մասը և որպեսզի նա տա երկրի ամբողջ ապրանքային գյուղատնտեսական արտադրանքի 60—70 տոկոսը։*

★ *Գյուղում կոոպերատիվների աճման հետ միասին ավելանում է Ռումինիայի գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությունը, աճում նրա մեքենայացման մակարդակը։ Միայն 1957 թվականին ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը ստացել է 4.142 տրակտոր, 1.450 հացահատիկային կոմբայն, 3.490 տրակտորային գութան, մոտ 3 հազար շարքացան, 3 և կես հազար կուլտիվատոր և շատ այլ գյուղատնտեսական տեխնիկա։*

★ *Ռումինական գյուղացիների արտադրական միավորումները արդեն շատ համոզիչ կերպով ցույց են տալիս իրենց առավելությունները մասնավոր տնտեսությունների նկատմամբ։ 1957 թվականին նրանք միջին հաշվով հեկտարից ստացել են 300—400 կիլոգրամով ավելի հացահատիկ, քան մենատնտես գյուղացիները։*

*ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ։ Աճում են կոոպերատիվ շարժման տեմպերը գյուղում։ Անցյալ տարի ստեղծվել է 520 նոր գյուղատնտեսական ար-*

տադրական կոոպերատիվ, իսկ այս տարվա միայն առաջին երեք ամսվա ընթացքում 675 կոոպերատիվ։ Մինչև 1958 թվականի ապրիլը արտադրական կոոպերատիվների թիվը հասել է 7.336-ի։ Նրանք մշակում էին ռեսպուբլիկայի ամբողջ օգտակար գյուղատնտեսական ցանքատարածությունների 27,7 տոկոսը։

★ Չնայած այն դժվարություններին, որոնք կապված են կոլեկտիվ տնտեսություն վարելու փորձի բացակայության հետ, կոոպերատիվների ճնշող մեծամասնությունը հաջող է զարգանում։ Արդեն հազար կոոպերատիվներում մեկ ցենտներ հացահատիկի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի և այլ գյուղատնտեսական կուլտուրաների արտադրության համար կատարվող ծախսերը շատ անգամ փոքր են, քան անհատական տնտեսություններում։

Հացահատիկային, ձիթատու և թելատու կուլտուրաների՝ յուրաքանչյուր հեկտարից ստացվող միջին բերքը կոոպերատիվներում արդեն 1956 թվականին գերազանցեց մենատնտես գյուղացիների տնտեսություններում եղած բերքատվությունը։

★ ԳԴՌ-ի գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման գործում կա-



րևոր դեր են խաղում մեքենա-տրակտորային կայանները, որոնք իրենց մոտ են կենտրոնացրել զգալի քանակությամբ գյուղատնտեսական տեխնիկա։ 1957 թվականի վերջերին ռեսպուբլիկայի ՄՏԿ-ները ունեին 34,6 հազար տրակտոր, 3.702 հացահատիկային կոմբայն, 1.640 կարտոֆիլահավաք կոմբայն և այլ գյուղատնտեսական տեխնիկա։

Գյուղատնտեսության կոոպերացման գործում նշանակալի դեր են խաղում ժողովրդական կալվածքները, որոնք արտադրական կոոպերատիվներին մատակարարում են ցեղական անասուններ և բարձրորակ սերմեր։

ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ։ 1956 թվականի հոկտեմբեր-նոյեմբերի հակառևոլյուցիոն խռովությունը լուրջ վնաս հասցրեց արտադրական կոոպերատիվներին։ Մինչև 1956 թվականի նոյեմբերը եղած կոոպերատիվների մեծ մասը ցրվեց։ Սակայն ռեակցիային չհաջողվեց հեղինակազրկել աշխատավոր գյուղացիության արտադրական կոոպերացման գործը։ Երկրի դրության նորմալացմանը համապատասխան վերականգնվում էին հին և ստեղծվում նոր արտադրական կոոպերատիվներ։ 1957 թվականին վերականգնվել է 1.150

կոոպերատիվ, որոնք ցրվել էին հակառևոլյուցիոներների կողմից։

Անցյալ տարվա վերջին ռեսպուբլիկայում հաշվվում էր 3.465 արտադրական կոոպերատիվ և արտադրական-կոոպերատիվ խմբեր, որտեղ աշխատում էին 164 հազար գյուղացի: Արտադրական կոոպերատիվներին էր պատկանում երկրի վարելահողերի ավելի քան 11 տոկոսը: Այս տարվա առաջին եռամսյակում ստեղծվել է 93 նոր գյուղատնտեսական կոոպերատիվ։

★ 1957 թվականին կոոպերատիվների աշխատանքը զգալիորեն բարելավվել է։ Մեկ հոլդի (1 հոլդը հավասար է 0,575 հեկտարի) միջին բերքատվությունը արտադրական կոոպերատիվներում գերազանցել է մասնավոր գյուղացիական տնտեսությունների բերքատվությունը՝ հիմնական հացահատիկային կուլտուրայի՝ ցորենի գծով՝ 2,1 ցենտներով, տարեկանի գծով՝ 1,8 ցենտներով, աշնանացան գարու գծով՝ 0,9 ցենտներով։ 1957 թվականին կոոպերատիվի միջին հաշվով մեկ անդամի ստացած եկամուտը շատ ավելի բարձր էր, քան անցած մյուս բոլոր տարիներին։

---



# ԻՆՉԻ ՀԱՄԱՐ ԵՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները ջանք չեն խնայում պատվով կատարելու պարտիայի կողմից առաջադրված խնդիրները՝ բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու և անցնելու համար։
Այս գյուղատնտեսական տարում նրանք պայքարում են հետևյալ ցուցանիշների համար։

✪ Մեկ կովի կաթնատվությունը կոլտնտեսություններում հասցնել ոչ պակաս, քան 1.500 կիլոգրամի, սովխոզներում՝ 3.200 կիլոգրամի, մեկ ոչխարի բրդատվությունը կոլտնտեսություններում՝ 2,6 կիլոգրամի, սովխոզներում՝ 3,2 կիլոգրամի։

✪ Յուրաքանչյուր 100 մայր անասունից ստանալ 85 հորթ, 95 գառ, կոլտնտեսություններում՝ 1.200 խոճկոր, սովխոզներում՝ 1.500 խոճկոր։

✪ Կոլտնտեսություններում անասնաբուծական մթերքների մթերումների և գնումների տարեկան պլան-

ների կատարումն ավարտել կաթը՝ մինչև 1958 թվականի հոկտեմբերի 1-ը, միսը, բուրդը և ձուն՝ մինչև նոյեմբերի 7-ը։

✪ Կոլտնտեսություններում 1958—1959 թվականների մսուրային շրջանի համար կուտակել 530 հազար տոննա խոտ և 500 հազար տոննա սիլոս։

✪ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում անասնաբուծական մթերքների արտադրությունը հասցնել մսինը՝ կենդանի քաշով 46 հազար տոննայի, այդ թվում խոզի մսինը՝ տասը հազար տոննայի, որից կոլտնտեսություններում՝ 42.500 տոննայի և սովխոզներում՝ 3.500 տոննայի։

✪ Այս գյուղատնտեսական տարում կոլտնտեսություններում և սովխոզներում կաթի արտադրությունը հասցնել 195 հազար տոննայի, այդ թվում կոլտնտեսություններում՝ 177 հազար տոննայի և սովխոզներում՝ 18 հազար տոննայի։

✪ Հարյուր հեկտար հողատարածության դիմաց ռեսպուբլիկայի բոլոր տնտեսությունների գծով արտադրել 58 ցենտներ միս, 240 ցենտներ կաթ։

✪ 1958 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովխոզները պայքարելու են 300 հազար տոննա հացահատիկի համար։ Նրանք հացահատիկային կուլտուրաների ամբողջ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալու են 11,5 ցենտներից ոչ պակաս բերք։

✪ Բամբակագործ կոլտնտեսականները պարտավոր-



վել են բամբակի հումքի համախառն արտադրանքը հասցնել 34 հազար տոննայի, պայքարելով յուրաքանչյուր հեկտարից ստանալ ոչ պակաս 24 ցենտներ բերք։

✪ Այս տարի ծխախոտի հումքի արտադրությունը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում հասցվելու է 10.500 տոննայի։ Կոլտնտեսականները պայքարում են յուրաքանչյուր հեկտարից ստանալ ոչ պակաս 13,3 ցենտներ բարձրորակ հումք։

✪ Շաքարի ճակնդեղի համախառն արտադրանքը ռեսպուբլիկայում հասցվելու է 89 հազար տոննայի։ Ճակնդեղի ցանքատարածության ամեն մի հեկտարից կոլտնտեսականներն ստանալու են 230 ցենտներ բերք։

✪ Մեր ռեսպուբլիկան այս տարի պայքարում է 130 հազար տոննա կարտոֆիլի համար, կարտոֆիլի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից հավաքելու է ոչ պակաս, քան 110 ցենտներ բերք։

✪ Կոլտնտեսություններում և սովխոզներում բանջարեղենի բոլոր տեսակների համախառն արտադրանքը հասցվելու է 100 հազար տոննայի, որից կոլտնտեսություններում՝ 75 հազար և սովխոզներում՝ 25 հազար տոննա։

✪ Ռեսպուբլիկան այս տարի երկրին կտա ավելի քան 94 հազար տոննա խաղող և մոտ 25 հազար տոննա պտուղ։

✪ Այս տարի խաղողի այգիների միջին բերքատվությունը հասցվելու է կոլտնտեսություններում՝ 70

ցենտների, սովխոզներում՝ 75 ցենտների, իսկ պտղատու այգիների բերքատվությունը կոլտնտեսություններում՝ 40 ցենտներ, սովխոզներում՝ 43 ցենտներ։

✪ Կոլտնտեսություններում և սովխոզներում այս տարի տնկվելու է (զգալի մասն արդեն տնկվել է) 3.500 հեկտար խաղողի այգիներ, որից կոլտնտեսություններում՝ 2.000 հեկտար, սովխոզներում՝ 1.500 հեկտար, պտղատու այգիներ՝ 2.900 հեկտար, որից կոլտնտեսություններում՝ 1.800 և սովխոզներում՝ 1.000 հեկտար։

✪ 1958 թվականին մեկ տուփ գրենայից ստացվելու է միջին հաշվով 65 կիլոգրամ բարձրորակ բոժոժ և պետությանն է հանձնվելու 2.000 ցենտներ բոժոժի հումք։

✪ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պարտավորվել են հացահատիկային կուլտուրաների բերքահավաքն ավարտել 8—10 աշխատանքային օրում և այս տարի կատարել 25—30 հազար հեկտար հացահատիկի անջատ բերքահավաք։

✪ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պայքարում են, որպեսզի 100 հեկտար հողատարածության դիմաց կովերի գլխաքանակը լեռնային և նախալեռնային գոտու կոլտնտեսություններում հասցվի առնվազն 15 գլխի, Արարատյան դաշտավայրի կոլտնտեսություններում՝ 20—25 գլխի։

✪ Կատարելով ստանձնած պարտավորությունները



արդեն մեր ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ աչքի ընկնող հաջողությունների են հասել։

✪ Անցյալ տարվա 220 հազար 268 ցենտների դիմաց այս տարվա առաջին եռամսյակում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները արտադրեցին 290 հազար 429 ցենտներ կաթ, այսինքն նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ 31,9 տոկոսով շատ։

✪ 1958 թվականի առաջին եռամսյակում, 1957 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մեկ կովի կաթնատվությունն ավելացել է 21,7 տոկոսով։

✪ Կաթի արտադրությունն ավելացնելու գործում ռեսպուբլիկայի մի շարք շրջաններ աչքի ընկնող հաջողությունների են հասել։ Կրասնոսելսկի շրջանում այս տարվա առաջին եռամսյակում անցյալ տարվա նույն ժամանկաշրջանի համեմատությամբ կաթի արտադրությունն ավելացել է 73,8 տոկոսով, Ազիզբեկովի շրջանում՝ 70,1 տոկոսով, Եղեգնաձորում՝ 56,9 տոկոսով, Նոր Բայազետում՝ 54,6 տոկոսով, Ապարանում՝ 54,8 տոկոսով, Մարտունիում՝ 56,8 տոկոսով, Ամասիայում՝ 40,9 տոկոսով և այլն։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈՒԼԻՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Արտադրության մեջ արմատավորենք նոր տեխնիկան, բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. Լենին— *Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, Երկեր, Հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ 1951։*

Ն. Ս. Խրուշչով— *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, մաս 2-րդ. Հայպետհրատ, 1956։*

Բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումը արագացնելու մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված լսելի Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ,*



*1958 թվականի մայիսի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 9-ի համարում։*

## 2. Լրիվ օգտագործենք ձեռնարկությունների արտադրական կարողությունները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿՊ XX համագումարի բանաձևը պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

Ն. Ս. Խրուշչով— *Ճառ 1958 թվականի Համամիութենական արդյունաբերական ցուցահանդեսի բացման ժամանակ, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 3-ի համարում։*

Խստիվ պահպանել պետական կարգապահությունը, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 5-ի առաջնորդողը։*

Տեխնոլոգիական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման շնորհիվ, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 8-ի համարում։*

## 3. Երկրին տանք ավելի շատ և ավելի էժան գյուղատնտեսական մթերքներ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Դիմումը կոլտնտեսականներին, կոլտնտեսություններին, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխա—



տողներին, պատիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, սովետական ու գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության մասնագետներին և բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 23-ի համարում։*

Ն. Ս. Խրուշչով.— *Ճառ՝ արտասանած 1958 թվականի Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի բացման ժամանակ, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 13-ի համարում։*

Կազմակերպել անասունների արոտային գիրացումը, *հոդված՝ տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1958 թվականի 5-րդ համարում։*

## 4. Լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը, անթերի կատարենք ստանձնած պարտավորությունները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. Լենին— *Ինչպես կազմակերպել մրցությունը, Երկեր հատոր 26, էջ 493—506, Հայպետհրատ, 1951։*

Կատարենք ստանձնած պարտավորությունների կատարումը, *հոդված՝ տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1958 թվականի 5-րդ համարում։*



## 5. Խնամքով օգտագործենք գյուղատնտեսական մեքենաներն ու գործիքները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. Խրուշչով.— *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, Հայպետհրատ, 1956, էջ 94—97։*

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ, ընդունված 1958 թվականի փետրվարի 26-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թվականի փետրվարի 28-ի համարում։*

## 6. ՍՍՌՄ-ը հետևողականորեն պայքարում է ժողովուրդների միջև տնտեսական, քաղաքական և կուլտուրական համագործակցության ամրապնդման, խաղաղության ապահովման համար

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Համատեղ հայտարարություն՝ պրեզիդենտ Գամալ Աբդել Նասերի ՍՍՌՄ այցելելու կապակցությամբ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կառավարության և Միացյալ Արաբական

Ռեսպուբլիկայի կառավարության միջև տեղի ունեցած բանակցությունների արդյունքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 17-ի համարում:*

Կոմյունիկե՝ տնտեսական փոխօգնության խորհրդի մասնակից երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 25-ի համարում:*

Վարշավայի Պայմանագրի մասնակից պետությունների Դեկլարացիան, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 27-ի համարում:*

Սովետա-ֆինլանդական կոմյունիկե, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 1-ի համարում:*

Ընկ. Ն. Ս. Խրուշչովի ճառը Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի 7-րդ համագումարում 1958 թվականի հունիսի 3-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 7-ի համարում:*

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ